Հայկական Սաթենիկը և նրա կովկասյան զուգահեռները
[Armenian Sat'enik and Her Caucasian Parallels], by Armen Petrosyan,
from *Lraber hasarakakan gitut'yunneri [Bulletin of Social Sciences]*
(Erevan, Armenia), 2018, No. 3, pp. 310-331.

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍԱԹԵՆԻԿԸ ԵՎ ՆՐԱ ԿՈՎԿԱՍՅԱՆ ԶՈՒԳԱՀԵՌՆԵՐԸ

Արմեն Պետրոսյան

Հայկական և հյուսիսկովկասյան էպիկական ավանդույթների համընկումները նկատվել են արդեն XIX դարում՝ Դ. Լավրովը գրել է «Վիպասանքի» Սաթենիկի և նարթական էպոսի մեծ հերոսուհու՝ Սաթանայի համապատասխանության մասին[1], իսկ Վ. Միլլերը քննարկել ժայռերում շղթայված կովկասյան և հայկական հերոսների առասպելները[2]: Ավելի ուշ Ժ. Դյումեզիլը նշել է հայկական Արտաշեսի և օսական Ուըրուզմագի՝ խնջույքի ժամանակ դավադրության[3], հայ ու օսական երկվորյակների՝ ծովը/լիճը մտնելու դրվագների[4] և մի քանի այլ համապատասխանություններ: Իսկ Վ. Աբաևը կանխադրել է հայ-օսական «Վարազման և Սաթենիկ» վիպական ցիկլի գոյությունը, որի սյուժեներն ու մոտիվներն են հասել մեզ օսական «Ուըրուզմագ և Սաթանա» վեպում[5]:

Հայկական և հյուսիսկովկասյան վիպական ավանդույթներն առաջին անգամ համակարգված ձևով համեմատվել են մեր աշխատություններում[6]: Հայ և օսական վիպական ընդհանրությունների վերաբերյալ մանրամասն գրել է Տ. Դալալյանը, որը բացահայտել է մի շարք կարևոր իրողություններ[7]:

---

[1] Лавров Д. Заметки об Осетии и осетинах, Сборник материалов для описания местностей и племен Кавказа, вып. III, раздел I. Тифлис, 1883, с. 189.

[2] Миллер В. Ф. Кавказские предания о великанах прикованных к горам. Фольклор народов Северного Кавказа. Тексты и исследования, М., 2008, с. 826-837.

[3] Дюмезиль, Ж. Осетинский эпос и мифология, М., 1976, с. 50-55.

[4] Dumézil G. Le roman des jumeaux, Paris, Gallimard, 1994, p. 120-121.

[5] Абаев В. И. Нартовский эпос, Известия северо-осетинского научно-исследовательского института, т. X, вып. I. Дзауджикау, Госиздат, 1945, с. 43.

[6] Պետրոսյան Ա. Արամի առասպելը համեմատական առասպելաբանության համատեքստում և հայոց ազգածագման խնդիրը, Երևան, 1997. Նույնի՝ Հայկական էպոսի հնագույն ակունքները, Երևան 1997. Նույնի՝ Հայկական և հյուսիսկովկասյան նարթական էպոսների հարաբերությունը. Հայ ժողովրդական էպոսը և համաշխարհային էպիկական ժառանգությունը. Երևան 2012, էջ 8-51. Петросян А. Е. Армянский эпос и мифология, Ереван 2002. Նույնի՝ Армянский Мхер, западный Митра и урартский Халди. Հայկական «Սասնա ծռեր» էպոսը և համաշխարհային էպիկական ժառանգությունը. Երևան 2004, էջ 42-60. Նույնի՝ Некоторые армяно-западнокавказские эпические параллели, Эволюция эпической традиции: к 80-летию академика АН Абхазии Ш.Х. Салакая, Сухум, 2014, с. 192-195. Նույնի՝ Структурные связи армянских и осетинского нартского эпосов, Армянский народный эпос и всемирное эпическое наследие, IV, Ереван, 2014, с. 47-53; Petrosyan A. Y. The Indo-European and Ancient Near Eastern Sources of the Armenian Epic, Washington DC, 2002. Նույնի՝ The Indo-European *$H_2$ner(t)-s and the Danu Tribe. Journal of Indo-European Studies, 2007, p. 297-310.

[7] Դալալյան Տ. Հայոց վիպական Սաթենիկ թագուհու կերպարի ծագումնաբանության շուրջ. ՊԲՀ, 2002, 2, էջ 191-213. Նույնի՝ «Սասնա ծռերի» և օսական «Նարթյան դիցավեպի» համեմատական քննության ուրվագիծ. Հայկական «Սասնա ծռեր» էպոսը և համաշխարհային էպիկական ավանդությունը. Երևան, 2004, էջ 82-87. Նույնի՝ Օսական Վարխագի և հայկական Վահագնի մասին. Հայ ժողովրդական մշակույթ XII, Երևան, 2004,

Հայկական և կովկասյան որոշ վիպական ընդհանրությունների, հատկապես հինարևելյան առասպելաբանական կապերի համատեքստում, անդրադարձել է Հ. Հմայակյանը[8]: Այդ աշխատություններում քննարկվել են նաև Սաթենիկի և կովկասյան էպոսների համանման անուններով հերոսուհիների կապերի խնդիրը:

Սաթենիկ թագուհու պատմությունը պատմվում է Մովսես Խորենացու գրքից հայտնի (Ա, լ. Բ, խթ-կա) հին հայկական «Վիպասանք» էպոսի վերջին մասում: Խորենացին ներկայացնում է պատմական իրադարձություններ, երբեմն մեջբերելով երգեր և չափածո հատվածներ էպոսից, հաճախ ռացիոնալ բացատրություններ տալով առասպելական դրվագներին («այլաբանությունը ճշմարտելով», Բ.խթ): «Վիպասանքը», ինչպես և մյուս հայկական էպոսները, բաղկացած է մի քանի «ճյուղերից», որոնք պատմում են հայ թագավորների մի քանի սերունդների ընթացքում տեղի ունեցած իրադարձությունների մասին, որտեղ Սաթենիկը հանդես է գալիս Արտաշեսի ճյուղում: Ահա ինչ կարելի է այստեղ ներկայացնել նրա մասին էպոսի մեզ հասած դրվագներից:

Արտաշեսի արքայության ժամանակ ալանները, միավորված մյուս կովկասյան լեռնցիների և Վիրքի կեսի հետ, հսկայական ամբոխով հարձակվում են Հայաստանի վրա: Հայերը ճակատամարտում հաղթում են նրանց, իսկ ալանական արքայազնը գերվում է: Ալանները նահանջում են և բանակում Կուրի հյուսիսային ափին, իսկ Արտաշեսը ճամբար է դնում հակադիր ափին: Ալանական արքայադուստր Սաթենիկը կամ Սաթինիկը (անունն ավանդված է երկու ձևով) գետի բարձրադիր ափից դիմում է Արտաշես արքային բանաստեղծական խոսքով, խնդրելով վերադարձնել իր եղբորը, քանի որ «ոչ է օրէն դիւցազանց՝ զայլոց դիւցազանց զարմից բառնալ զկենդանութիւն, կամ ծառայեցուցանելով ի ստրկաց կարգի պահել, եւ թշնամութիւն յաւիտենական ի մէջ երկոցունց ազգաց քաջաց հաստատել»: Լսելով արքայադստեր «իմաստուն խոսքերը», Արտաշեսը «ցանկանում» է կույսին և մարդ է ուղարկում ալանների թագավորի մոտ, որ Սաթենիկին կնության տա իրեն: Թագավորը մերժում է, և այնժամ Արտաշեսը ձի հեծնելով անցնում է գետը, արկանում աղջկան և հասցնում իր ճամբարը: Նկարագրվում է Արտաշեսի ու Սաթենիկի հարսանիքը՝ «Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի, տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն»: Նա դառնում է արքայի կանանցից առաջինը և արքայազների մայրը: Այս պատմությունից որոշ չափով կտրված, ասվում

---

էջ 37-39: Նույնի՝ դրվագներ հայ-ալանական դիցանվանական առնչություններից. Հայ ժողովրդական մշակույթ XIII, երևան, 2004, էջ 44-54. Dalalyan, T. On the Character and Name of Caucasian Satana (Sat'enik). Aramazd: Armenian Journal of Near Eastern Studies, 1, 2006, p. 239-253:

[8] Հմայակյան, Հ. Սոսանվեր Անուշավանը և նրա կովկասյան ու խուռիական զուգահեռները. Մերձավոր Արևելք II. Պատմություն, քաղաքականություն, մշակույթ. Երևան, 2005, էջ 28-34: Նույնի՝ Խուռիական Ša(w)uš(k)a աստվածուհու անվան և կերպարի դրսևորումները հայկական առասպելական և լեզվական նյութում. Մերձավոր և միջին արևելքի երկրներ և ժողովուրդներ, XXVIII. Երևան, 2011, էջ 239-250:

է, որ Սաթենիկը վիշապազուններ է սիրել և «տենչացել» վիշապազուն Արգավանին, թագավորության երկրորդ գահի տիրոջը:

Մեր թեմայի համար կարևոր է նաև Արտաշեսի և Սաթենիկի որդու՝ Արտավազդ արքայի կերպարը: Պատմվել է, որ Արգավանը դավ է լարել Արտաշեսի դեմ «ի տաճարին վիշապաց»: Արտավազդը սպանում է Արգավանին, ոչնչացնում նրա տոհմը և ինքը դառնում երկրորդը արքայից հետո: Նրա մասին պատմել են, որ «վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ և դև փոխանակ եդին»: Երբ Արտաշեսի մահվան ժամանակ, հեթանոսական սովորության համաձայն, շատ մարդ է զոհվում, Արտավազդը բողոքում է՝ «Մինչ դու գնացեր և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակացս ո՞ւմ թագաւորեմ»: Ի պատասխան՝ Արտաշեսն անիծում է նրան, որ որսի ժամանակ բռնվի քաջքերի կողմից և զնդանվի Մասիսի վիհում: Եվ պատմել են, որ նա շղթայված է այնտեղ մի քարանձավի մեջ. երկու շուն կրծում են նրա կապանքները, նա ջանում է դուրս գալ և վերջ տալ աշխարհին, բայց դարբինների կռանահարության ձայնից շղթաներն ամրանում են (Խորենացի Ա,Լ. Բ, խը, ծ, կա):

Կովկասյան էպոսների մեծ հերոսուհու՝ Սաթանա/Սաթանեյի (հանդես է գալիս տարբերակային ձևերով՝ Սաթանեա, Սաթանեյ-Գուաշա, Սելա Սաթա և այլն), ինչպես և Սաթենիկի կյանքի նշանավոր դրվագը կարելի է կոչել «գետափնյա արկած»: Հայոց էպոսում Արտաշեսը ձիով անցնում է գետը և առևանգում Սաթենիկին, իսկ կովկասյաններում՝ նարթերի հովիվը կամ մի ուրիշ կերպար, տեսնելով գետափին (կիսա)մերկ (լողացող) հերոսուհուն, բեղմնավորում է քարը, կամ բաց թողնում իր «նետը» նրա ուղղությամբ: Նետի թռիչքն ուղեկցվում է փոթորկով, ամպամածությամբ, որոտով, կայծակով և երկրաշարժով[9]: Նետը խոցում է մի քար, որի վրա առաջանում է հերոսի (օս. Սոսլան, ադըղ. Սոսրուկո, աբխազ. Սասրըկվա) սաղմը: Որոշ տարբերակներում հերոսուհին ինքն է հղիանում «նետ»-սերմից:

Օսական էպոսում Սաթանայի ամուսինն է Ուրուզմագը: Չնայած որոշ տարբերություններին (նա Սաթանայի եղբայրն է), նա պարզորոշ համապատասխանում է Արտաշեսին. նա նարթերի՝ էպոսի առասպելական հերոսների ցեղի առաջնորդն է, իսկ Արտաշեսը՝ հայոց արքան, հմմտ. և Դյումեզիլի նկատած՝ Արտաշեսի և Ուրուզմագի դեմ նյութված դավի դրվագների նմանությունը: Ակնհայտ է և հաջորդ սերնդի հերոսների՝ Արտավազդի և Սոսլան/Սոսրուկոյի համապատասխանությունը: Եթե առաջինը զնդանված է լեռնային քարայրում, որտեղից նա ձգտում է ազատվել («վերածնվել» մահվան աշխարհից), ապա երկրորդը ծնվում է քարից (այսինքն, կովկասյան հերոսի ծնունդը համապատասխանում է հայ հերոսի վերածնությանը)[10]: Սոսլան-Սոսրուկոն Սաթանա/Սաթանեյի

---

[9] Տե՛ս օրինակ Ардзинба В. Г. Нартский сюжет рождения героя из камня, Древняя Анатолия. М., 1985, с. 139:

[10] Կովկասյան ավանդույթներում քարից ծնվող և լեռներում զնդանված հերոսները տարբեր կերպարներ են: Հայոց մեջ չկան առաջին տիպի հերոսներ՝ նրանց փոխարինում են երկրորդ տիպի հերոսները (Արտավազդը և «Սասնա ծռերի» Փոքր Միհրը):

նշանավոր «չծնած» որդին է, ինչպես մանուկ հասակում դևով փոխարինված Արտավազդը՝ Սաթենիկի: Սոսլանը թաղվում է կենդանի և երբեմն դուրս է գալիս գերեզմանից նարթերին օգնելու համար: Իսկ Սոսրուկոն, ինչպես Արտավազդը, ջանում է ազատվել գետնի տակից: Ընդ որում, նրա գալուստը, ինչպես և Արտավազդինը, պետք է հանգեցնի աշխարհի կործանմանը (երկիրը կդադարի պտղաբերել)[11]:

Սաթենիկը սիրահարվում է Արգավանին՝ վիշապազունների առաջնորդին: Խորենացին (Ա.լ) մեջբերում է մի դժվար մեկնաբանելի հատված «Վիպասանքից» նրա՝ Արգավանի սերը տենչալու մասին: Եվ Արտավազդը, որ փոխարինվում է դևով, հենց «վիշապային» մի կերպար է[12], վերակազմության մեջ՝ Արգավանի որդին[13]: Իսկ աբխազական էպոսում Սաթանեյ Գուաշան («տիկինը») տենչում է հանդիպել հովվին՝ «նույնիսկ երազում այդ հանդիպումն էր տեսնում»[14]: Սոսրուկո/Սասրըկվայի հայրը, ով էլ որ նա լինի, նարթերի հովիվը, կամ որևէ այլ մեկը, հանդես է գալիս որպես խթոնիկ, օձային կերպար[15]: Արգավանի հետ փաստորեն նույնանուն՝ ռուսական տառադարձմամբ՝ Аргуанэ, Аргун, երբեմն Аргунэ, Аргонеж, անգլ. Argwana, մի հերոս ադըղական տարբերակներում հանդես է գալիս որպես մեծ և հզորագույն մի այր, նարթ, կամ նարթերի հակառակորդ՝ նա փախցնում է Սաթանեյին, դառնում Սոսրուկոյի հայրը, որն, ինչպես և Արգավանը, վերջում պատժվում է՝ սպանվում[16]:

«Վիպասանքը» պատմական էպոս է: Դեպքերը պատմվում են վիպական ձևով, կան ակնհայտ առասպելական տարրեր՝ Տիգրան Երվանդյան արքան սպանում է մարական արքա Աժդահակին (սա համապատասխանում է իրանական առասպելաբանության Աժի Դահակա օձ-վիշապին, որին սպանում է հերոս Թրաետաոնան) և նրա նրա զարմը՝ վիշապազուններին բնակեցնում Մասիսի ստորոտին, նույն լեռան մի քարայրում է զնդանված Արտավազդը ևն, բայց բազում այլ իրադարձություններ՝ Արտաշատ մայրաքաղաքի կառուցումը, ալանների հարձակումը և գործող անձինք՝ հատկապես Արտաշեսը և Արտավազդը

---

[11] Дюмезиль Ж. Скифы и нарты. М., 1990, с. 29, 84-90; Кабардинский фольклор, М.-Л., 1936, с. 30-33; Нарты: адыгский героический эпос, М., 1974, с. 137.

[12] Աբեղյան Մ. Երկեր, հ. Ա, Երևան 1966, էջ 148:

[13] Պետրոսյան Ա. Հնդեվրոպական անագրամը Խորենացու «զարտախուր խաւարտ» հատվածում (տպագրության մեջ):

[14] Приключения нарта Сасрыквы и его 99 братьев. Сухум, 1988, с. 29.

[15] Ардзинба В. Г. նշվ. աշխ., էջ 132-133, 143:

[16] Дьячков-Тарасов Н. Абадзехи (историко-этнографический очерк). Записки Кавказского отдела русского географического общества. Кн. 22. Вып. 4. Тифлис, 1902. http://www.vostlit.info/Texts/Dokumenty/Kavkaz/XIX/1840-1860/Djachkov_Tarasov_N/text4.htm; Гадагатль А. М. Героический эпос «Нарты» и его генезис. Краснодар, 1967, с. 273-278; Colarusso J. Nart Sagas from the Caucasus, Princeton/Oxford, 2002, p. 34-43; Արգավանի և Արգվանայի նույնացման վերաբերյալ տե՛ս Russell J. Argawan: the Indo-European Memory of the Caucasus, Journal of Armenian Studies, 2006, Vol. VIII, 2, p. 110-147.

պատմական են (այդ անունները մ.թ.ա. II դարի Արտաշեսյան արքայատոհմի իրական արքաների անուններ են): Ալանների՝ Հայաստան հարձակման վերաբերյալ գրել են Հովսեպոս Փլավիոսը, Դիոն Կասիոսը, Տակիտոսը, Խորենացին և այլք: Համարվում է, որ ալաններն առաջին անգամ հայտնվել են Անդրկովկասում և Հայաստանում մ.թ.ա. I դ. (մ.թ. 35 և 72 թթ.)[17]: Ահա թե ինչ է գրում Հովսեպոս Փլավիոսը ալանների՝ երկրորդ արշավանքի ժամանակ Մարաստանից հետո Հայաստանն ասպատակելու վերաբերյալ («Հրեական պատերազմի մասին» VII, 7, 4):

> *...Նրանք շարունակեցին իրենց ամայացնող արշավանքը մինչև Հայաստան: Այստեղ արքան էր Տիրիդատեսը (Տրդատ I – Ա.Պ.), որը, թեպետ և դուրս եկավ նրանց դեմ և ճակատամարտ տվեց, բայց և ինքը հազիվ կենդանի գերի չընկավ: Նրանցից (ալաններից) մեկը հեռվից նրա վրա նետեց արկանը և կփախցներ նրան կռվի դաշտից, եթե արքային չհաջողվեր ժամանակին սրով կտրել պարանը և այդպիսով փրկվել: Եվ ալանները, այդ ճակատամարտից ավելի մոլեգնած, ամայացրին ողջ երկիրը և երկու թագավորություններից թալանված գերիների ու ավարի հսկայական զանգվածով վերադարձան հայրենիք[18]:*

Ալանական արքայադստեր՝ Արտաշեսի կողմից առևանգվելու դրվագը, որը, ի միջի այլոց, լավ զուգահեռ ունի «Շահնամեում» (Սուհրաբի և Գուրդաֆարիդի պատմությունը)[19], հավանաբար, ստեղծվել է այս պատմության հիման վրա՝ հայոց արքայի արկանումը և փրկությունը վերածվել է ալանական արքայադստեր արկանման և առևանգման[20]: Էպոսում արքաների ծննդաբանությունը և նրանց հաջորդականությունը, ինչպես հաճախ լինում է, խախտված է՝ շատ կերպարներ իրենց վրա են վերցրել այլ հերոսների հատկանիշներ: Այսպես, վիպական Արտաշեսը, որը կառուցում է Արտաշատը, ակնհայտորեն Արտաշես I-ն է (մ.թ.ա. 189-160), որի կերպարը խառնվել է Արշակունյաց արքայատոհմի առաջին արքայի՝ Տրդատ I-ի հետ (մ.թ. շուրջ 52-88), որը վերակառուցել է Արտաշատը և կռվել ալանների դեմ: Արտաշեսի որդին՝ Արտավազդը, հավանաբար, Արտավազդ II-ն է, Տիգրան Մեծի որդին (մ.թ.ա. 56-34)[21]: Իսկ Տրդատ I-ի արկանման

---

[17] Скрипкин А. С. О времени появления аланов в Восточной Европе и их происхождении, Историко-археологический альманах, 7, Армавир, 2001, s. 15-40. http://www.kroraina.com/alan/skripkin.html, գրականությամբ:

[18] http://lib.ru/POEEAST/FLAWIJ/flavii_voina.txt; https://www.gutenberg.org/files/2850/2850-h/2850-h.htm#link2HCH0007. տե՛ս և Աբեղյան Մ., հ. Է, Երևան, 1975, էջ 165:

[19] Աբեղյան Մ., հ. Է, էջ 169: Տեսականորեն հնարավոր է, որ սա հայկական ազդեցության արդյունք լինի, բայց և չի բացառվում, որ որ արկանով աղջիկ առևանգելու մոտիվը հին ակունքներ ունենա իրանական ավանդույթում:

[20] Հմմտ. Халатьянц Г. А. Армянский эпос в Истории Армении Моисея Хоренского. М., 1896, с. 244; Աբեղյան Մ., հ. Է, էջ 164-178:

[21] Պետրոսյան Ա. Հայկական ավանդական դրամայի ակունքների շուրջ. ՊԲՀ, 2006, 2, էջ 273-274:

պատմությունը Խորենացու մոտ պատմվում է Տրդատ III-ի մասին (տե՛ս ստորև): Այսպիսով, կարելի է ասել, որ «Վիպասանքում» իրար են խառնվել մի քանի՝ Արտաշես և Տրդատ անունով արքաների կերպարներ[22] (Տրդատի որոշ գործեր անցել են Արտաշեսին՝ ժողովրդի կողմից սիրված մեծ արքայի կերպարը մոռացության է մատնել Տրդատին, կամ Տրդատին տրվել է Արտաշես պատվավոր անունը)[23]:

Պատմական են և «Վիպասանքին» հաջորդած երկու էպոսների՝ «Պարսից պատերազմի» և «Տարոնի պատերազմի» հերոսները, որոնցում պատմվում է, համապատասխանաբար, Արշակունիների իշխանության վերջին շրջանի և հետարշակունյաց դարերի Տարոնի իշխանների կռիվների մասին: Պատմական կերպարների առասպելականացումը, ակնհայտորեն, տեղի է ունեցել հերոսների մահից հետո, պատմության հաջորդ փուլերում: Առասպելական Արտավազդը մտել է նաև վրացական և օսական ավանդույթներ, ընդ որում, օսական Արտավըզը փոխառված է թվում ուղիղ հայկական ավանդույթից, առանց վրացական միջնորդության՝ հայ և օսական հերոսներին բնորոշ գծերը բացակայում են վրացական կերպարի մոտ[24]: Վրացական և օսական էպոս են մտել նաև հայկական քաջքերը (վրաց. *քաջի*, օս. *կածի, կաջի*)[25], և, այս դեպքում ևս, օսականի վրա երևում է հայկական ուղղակի, չմիջնորդավորված ազդեցությունը (նրանք բռնում են Սոսլանին որսի ժամանակ, ինչպես քաջքերը Արտավազդին, ինչը չկա վրացական նյութում)[26]: Հայկական առասպելները կարող էին Կովկաս հասցնել և՛ Հայաստան արշաված ալանական ռազմիկները, և՛ Կովկաս տեղափոխված հայերը: Չէ՞ որ շատ օսական տոհմեր իրենց համարում են հայոց արքայազնի (Tagawer, Tagaur, հմմտ. հայ. *թագաւոր*), իսկ ժողովուրդը՝ հայերի և տեղացիների ժառանգներ[27] (այդ մասին տե՛ս ստորև):

---

[22] Աբեղյան Մ., հ. Ա, էջ 116, 119-124:

[23] Աբեղյան Մ., հ. Ա, էջ 118:

[24] Dalalyan T. On the Character and Name..., p. 249: Հայկական և օսական այս կերպարների մասին տե՛ս և Gevorgian N. On the Ossetic Legend About Art’ awyz. Iran and the Caucasus 11 (2007), p. 101-105:

[25] Քաջքերի անվանումը բնիկ հայերեն՝ հնդեվրոպական ծագման բառ է՝ «հաջող», «ընտիր», «խիզախ», նշանակություններով, որն անցել է առասպելական ոգիների մի դասի՝ հմմտ. որոշ ոգիների տաբուացված անվանումները՝ «մեզնե լավեր», «մեզանե աղեկներ»: Նրանք նախապես կազմել են «քաջ» Վահագն աստծու զորքը, իսկ հետագայում, հատկապես քրիստոնեական դրաշրջանում վերածվել չար ոգիների և որպես այդպիսիք անցել վրացական և օսական ավանդույթներ: Օս. *կածի/կաջին*, ինչպես ցույց է տալիս *-ի* վերջավորությունը, պետք է որ փոխառված լինի վրացական միջնորդությամբ: Վրացական էպոսում հենց քաջիներն են բռնում Ամիրանին՝ Արտավազդի վրացական համապատասխսնությանը (քաջիները կարևոր դեր են կատարում նաև Ռուսթավելու պոեմում): Այս հարցերի շուրջը տե՛ս Petrosyan A. From Armenian Demonology: the K‘aǰs. Journal of Indo-European Studies 46 (2018), 206-218.

[26] Dalalyan T. On the Character and Name..., p. 248-249.

Այսպիսով, կովկասյան նարթական էպոսներում հայոց «Վիպասանքի» Սաթենիկի ցիկլի ընդհանուր անուններն ու անվանումները (Արտավազդ, Արգավան, քաջքեր), փոխառված են հայկականից։ Ճշտենք, որ այս անունները հայտնի են հայոց մեջ շատ ավելի վաղ ժամանակներից՝ Արտավազդը հայ արքայի պատմական անուն է, որը ոչ մի հիմք չունի վրացական և կովկասյան ավանդույթներում, քաջքերի ստուգաբանությունը բնիկ հայկական է, Արգավանն էպոսի կենտրոնական դեմքերից է, հայտնի պատճառով՝ իրանական անունով (նա ծագումով մար է), իսկ Արգվանան միայն մի քանի ադըղական պատումներում հանդիպող էպիզոդիկ կերպար է, որի անունը ոչ մի բացատրություն չունի[28]։ Սաթանայի ամուսնու Wyryzmæg/Uruzmæg (Վըրըզմագ/Ուրուզմագ) անունը ալանական-օսական չէ, այլ ծագում է իրանական Վարազման անունից, ավանդված միայն հայկական աղբյուրներում (այս անունը կրել են Գարդմանի և Աղվանքի Միհրանյան իշխանների չորս ներկայացուցիչներ VII-VIII դդ.)[29], որի վերջավորությունը փոխարինվել է օսական տարածված -æg ածանցով[30]։ Եվ Ուրուզմագի անունը ևս, այսպիսով, փոխառված է հայկական իրականությունից։ Ուրեմն, Սաթանայի անունը նույնպես կարող էր փոխառվել հայերենից։ Հատկանշական է, որ որոշ աբխազական տվյալների համաձայն, Սաթանեյ-գուաշան սերում էր Հայխուզ տոհմից, որը, ըստ աբխազ հայագետ Գուրամ Գումբայի, պետք է կապվի *հայ* ցեղանվան հետ (անձնական հաղորդում, 1990 թ.)։ Այսպիսով, եթե հայոց մեջ Սաթենիկը համարվել է ալանուհի, ապա աբխազական ավանդույթում նրան, հավանաբար, հայկական ծագում են վերագրել[31]։

---

[27] Гутнов Ф. Х. 1989. Генеалогические предания осетин как исторический источник. Орджоникидзе, с. 7-10 et passim: Օսերին տեղացիների և Հայաստանից ու Վրաստանից տարված գերիների հետնորդներ է ներկայացնում և վրաց պատմիչ Լեոնտի Մրովելին, տե՛ս Г. В. Цулая, Жизнь картлийских царей, М., 1979, с. 25: Այս մասին տե՛ս և http://galgai.com/forum/archive/index.php/t-8150.html: Այս տվյալները հաստատվում են նաև գենետիկական մակարդակով՝ տե՛ս ստորև։

[28] Արգվանայի՝ Արգավանից փոխառվելու մանրամասն հիմնավորումը տե՛ս Russell J. Argawan..., p. 139-141:

[29] Աճառյան Հ., Հայոց անձնանունների բառարան (այսուհետև՝ ՀԱՆԲ), Երևան, հ. Ե, Երևան, 1962, էջ 64-65:

[30] Абаев В. И. Нартовский эпос, с. 25-26; Նույնի՝ Историко-этимологический словарь осетинского языка (այսուհետև՝ ИЭСОЯ), т. IV, М.-Л., 1989, с. 127-128:

[31] Петросян А. Е. Армянский эпос и мифология, с. 181.

Սաթանա/Սաթանեյ անունը չունի ընդունված ստուգաբանություն[32]: Իսկ հայերենում Սաթենիկը միանգամայն թափանցիկ անուն է, կազմված *սաթ* արմատից, *-ենի, -ենիկ* (նախորդի նվազականն է) ածանցով, ինչպես ունենք Նազենիկ/Նազինիկ, Արփենիկ, Վարսենիկ (համապատասխանաբար՝ *նազ, արփի* և *վարս* արմատներից)[33]: Հրաչյա Աճառյանը, որն իր անձնանունների բառարանում տալիս է անվան այս ստուգաբանությունը, ծանոթ էր Ժորժ Դյումեզիլի աշխատանքին Սաթենիկի և օսական Սաթանայի կապի վերաբերյալ[34], և քանի որ Սաթենիկն ինքը, ըստ հայկական ավանդույթի, ալանական արքայադուստր էր, նա չի պնդում իր այս ստուգաբանությունը: Բայց ակնհայտ է, որ օտար թագուհին Հայաստանում կարող էր վերանվանվել հայկական անունով: Սաթանա/Սաթանեյի անվան՝ հայոց Սաթենիկից ծագելու վարկածը մեր օրերում առաջ է քաշել Տորք Դալալյանը[35]: Ստորև ներկայացնենք փաստարկներ այդ մեկնաբանության օգտին:

Կարո՞ղ է մի երկրի թագուհին դառնալ այլ ժողովուրդների առասպելների և էպոսի գլխավոր հերոսուհին: Մենք տեսանք, որ Սաթենիկի ցիկլի կերպարները (Արտավազդ, Արգավան, քաջքեր) անցել են Կովկաս, ընդ որում, որոշ դեպքերում ուղիղ հայկական ավանդույթից, առանց վրացական միջնորդության: Ուրեմն, Սաթենիկը ևս կարող էր անցնել Կովկաս նույն ճանապարհով: Ընդհանրապես, մանավանդ հնդեվրոպական մշակույթներում, կանանց առասպելական անուններն ու կերպարները փոխառվել են ավելի հաճախ, քան արականները: Ներկայացնենք և մի ակներև զուգահեռ: Ասորեստանի պատմական թագուհի Շամմուրամատը

---

[32] ИЭСОЯ III, М.-Л., 1979, с. 39-40, հմմտ. Гуриев Т. А. Наследие скифов и алан. Владикавказ, 1991, с. 32; Челахсаев Р. К вопросу о происхождении имени Шатана. Дарьял, 2007, 1. http://www.darial-online.ru/2007_1/chelehsaev.shtml: Առանձին պետք է նշվի Fritz S, Gippert J. Nartica I: The Historical Satana Revisited. Nartamongae. The Journal of Alano-Ossetic Studies. 2005, III, 1-2, 159-201 (http://titus.uni-frankfurt.de/personal/jg/pdf/jg2000d.pdf) աշխատությունը, որտեղ հեղինակները, ցուցադրելով լայն էրուդիցիա և բերելով բազում բնագրային մեջբերումներ հին հայկական և վրացական աղբյուրներից, չեն հիշում Աբեղյանի հիմնարար աշխատություններն ու Սաթենիկի՝ Աճառյանի մատնանշած ստուգաբանությունը և առանց հիմնավոր փաստարկների նոր մեկնաբանություն են առաջարկում նրա անվան համար (իրան. *xšaθriyān- > *sartʻiān- > *satʻean- > satʻen-ik).

[33] ՀԱնԲ Դ, Երևան, 1948, էջ 342-34: *-ենի* վերջածանցի մասին տե՛ս Ջահուկյան Գ. Հին հայերենի վերջածանցների ծագումը, Պատմաբանասիրական հանդես, 1994, 1-2, էջ 64 (տե՛ս և https://www.facebook.com/groups/230828630314947/search/?query=%D5%BD%D5%A1%D5%A9%D5%AB%D5%B6%D5%AB%D5%AF): Ի միջի այլոց, Գ. Խալաթյանցը կարծում էր, որ Արտաշեսի ու Սաթենիկի անունները և նրանց ողջ պատմությունը ստեղծվել է Եսթերի աստվածաշնչյան գրքի հիման վրա (Халатьянц Г. А. Армянский эпос в «Истории Армении» Моисея Хоренского. М., 1896, с. 263-270): Աբեղյանի ջախջախիչ քննադատությունից հետո (1899) այդ գաղափարը դուրս եկավ շրջանառությունից, տե՛ս Աբեղյան Մ. հ. Է, էջ 165-172:

[34] Dumézil G. Le dit de la princesse Satinik, Revue des études arméniennes, 1929, IX, f. 1, 41-53.

[35] Դալալյան Տ. Հայոց վիպական Սաթենիկ թագուհու…; Dalalyan T. On the Character and Name…:

(մ.թ.ա. շուրջ 811-805) վերածվել է դիցաբանական և էպիկական կերպարի ասորեստանցիների հակառակորդների և նրանց հարևանների՝ պարսիկների, հայերի և այլոց մեջ (հուն. Սեմիրամիս, հայ. Շամիրամ)։ Նրան են վերագրվել անցյալի նշանավոր հուշարձանների կառուցումը, որոնց ծագումն արդեն մոռացվել էր[36] (Բաբելոնի կախված այգիներ, Դարեհ I-ի բեհիստունյան արձանագրություն և այլն, հայոց մեջ՝ ուրարտական նշանավոր հուշարձաններ, ժայռափոր արձանագրություններ, Վան քաղաքը, Մենուա արքայի ջրանցքը, տե՛ս Խորենացի Ա.ժզ)։ Եվ հայոց ավանդական պատմության մեջ նա ուղղակի հանդես է գալիս որպես Ուրարտուի էպոնիմ[37]։

Սիրո հետ կապված ավանդական հերոսուհիները, այսպես թե այնպես, կրկնում են սիրո հին դիցուհու կերպարը։ Այդպիսին էր հայոց Աստղիկը, որը հելլենիստական ժամանակներում նույնացվել էր Ափրոդիտեի հետ։ Նա համարվում էր սիրուհին Վահագն աստծու (Ագաթանգեղոս 809), որն իր հերթին նույնացվել էր Հերակլեսի և Արեսի հետ (այսինքն, Աստղիկ-Վահագն զույգը համապատասխանում է հունական Ափրոդիտե-Արես սիրային զույգին)։ Համարվում է նաև, որ Շամիրամը (որ սիրահարվել էր հայոց առաջնորդ Արա Գեղեցիկին), Աստղիկի պատմականացած, վիպական տարբերակն է[38]։ Նույնը կարելի է ասել և Սաթենիկի մասին։ «Գետափնյա արկածը»՝ Սաթենիկի և Սաթանայի կերպարների բնութագրական դրվագը, համեմատելի է Աստղիկի մասին հայտնի լեգենդի հետ։ Պատմել են, որ նա սիրել է լողանալ Արածանի գետում, Գուրգուռա կոչվող տեղում։ Երիտասարդ տղաները ցանկացել են տեսնել նրա մերկությունը, և Աստղիկը, որպեսզի անտեսանելի մնա, ծածկել է իրեն մշուշով[39]։ Մոտիվների մի ողջ շարք՝ լողանալը գետափին, դիցուհու մերկությունը, նրան դիտելը, մշուշը, որոտի ակնարկը (հմտ. Գուրգուռա, որն ակնարկում է ամպի գոռոցը) և այլն, համապատասխանում են Սաթանա/Սաթանեյի առասպելին։ Ընդ որում, Աստղիկը և Սաթանեյը կապված են մթնոլորտային երևույթների հետ (Աստղիկը մշուշ է բարձրացնում, իսկ Սաթանեյը՝ ցուրտ, անձրև և ձյուն)[40]։

Ըստ Թովմա Արծրունու (Ա.ը), Արտաշես արքան Արտամետում կանգնեցնում է Աստղիկ դիցուհու կուռքը, որին պաշտում էր իր կին

---

[36] Շամիրամի վերաբերյալ, այս համատեքստում, տե՛ս Боржак И. Возникновение и отголоски легенды о Семирамиде, Древний Восток 3, Ереван, 1978. 212-217.

[37] Петросян А. Е. Армянский эпос и мифология, с. 188-189; Պետրոսյան Ա. Հայ ժողովրդի ծագման խնդիրը, Երևան 2018, էջ 187-189։

[38] Մատիկյան Ա. Արա Գեղեցիկ, Վիեննա, 1930, էջ 101. Ադոնց Ն. Պատմական ուսումնասիրություններ, էջ 232-254. Աբեղյան Մ. հ. Է, էջ 157-162. Petrosyan A. State Pantheon of Greater Armenia, p. 194։

[39] Սրվանձտյան Գ. Երկեր, հ. I, Երևան, 1978, էջ 71-72։

[40] Պետրոսյան Ա. Արամի առասպելը..., էջ 110-116։ Աստղիկի և Սաթանեյի այս հատկանիշների վերաբերյալ տե՛ս համապատասխանաբար Աբեղյան Մ. հ. Է, էջ 158 և Инал-Ипа Ш. Д. Памятники абхазского фольклора, Сухуми, 1977, с. 17-18, 64։

Սաթենիկը: Կերպարների նմանությունը և սիրո դիցուհու հատուկ պաշտամունքն ակնհայտ են դարձնում, որ Սաթենիկը «Վիպասանքում» իրենից ներկայացնում է Աստղիկի այնպիսի մի վիպական տարբերակ, ինչպիսին Շամիրամն է ազգածին ավանդության մեջ: Հատկանշական է և անունների նմանությունը՝ *աստ...իկ* և *սաթ...իկ*, նույն նվազական ածանցով, ինչը նույնպես խոսում է ասվածի օգտին: Ի միջի այլոց, արմատների հնչողության մակարդակով սրանք կրկնում են անունները հին միջագետքյան մեծ դիցուհու՝ Իշտարի (ասորեստանյան՝ Իստար) և սիրիական Աստարտեի, որոնք նշանակալի դեր են կատարել Աստղիկի կերպարի ձևավորման գործում[41]: Ինչպես ասվեց, Շամիրամը փոխարինել է հին բնիկ դիցուհուն՝ Աստղիկին, իսկ մյուս կողմից, ակնհայտ է, որ Շամիրամը՝ Նինվեի առասպելականացած թագուհին, պետք է շարունակեր տեղի մեծ դիցուհու՝ Նինվեի Իշտարի կերպարը[42]:

Իշտարի բնորոշ ատրիբուտն է թանկագին քարերի ուլունքը: Հին աքադական «Գիլգամեշ» էպոսում, ջրհեղեղից հետո, Իշտարը բարձրացնում է իր լաջվարդի (լազուրե) ուլունքը և երդվում, որ չի մոռանա այդ օրերը (պնակիտ XI, 162-165)[43]: Ուլունքը նաև Շամիրամի հայտնի ատրիբուտն էր, որով նա հմայել է տղամարդկանց[44]: Լեգենդի վերջում այն նետվում է ծովը, և հմայությունը վերանում է (պահպանվել է հին ասացվածքը՝ «ուլունք Շամիրամայ ի ծով», Խորենացի Ա.ժը): Կարելի է կարծել, որ Սաթենիկը եղել է հին դիցուհու (Իշտար/Աստղիկ/Շամիրամ) մի մակդիրը, տրված նրան սաթե ուլունքի համար, որը դարձել է նրա վիպական ժառանգի անունը:

Հայոց մեջ սաթը հանդես է գալիս որպես սևի խտացում, հմմտ. *սաթի նման սև* արտահայտությունը[45] (համապատասխան անգլ. jet-black-ին): Եվ սաթն այստեղ պետք է հասկացվի ոչ թե որպես ռուս. янтарь, անգլ. amber «քարացած բրածո խեժ», այլ *սև սաթ, գիշեր, գիշերաքար, գագատ, խեժածուխ,* ռուս. гагат, гишер, черная яшма, гишма, անգլ. jet «սև սաթ»՝ «բրածո ածխի մածուցիկ տարատեսակը» նշանակությամբ: Հատկանշական է, որ Սաթենիկ անունը, որը մեզանում սկսվել է կիռառվել նոր ժամանակներում, հաճախ տրվում է թուխ և սևահեր աղջիկներին (ըստ ազգագրագետ Նիկոլ Մարգարյանի անձնական հաղորդման): Հայաստանում հայտնի է եղել Կարսի շրջանի Օլթի (Ուղտիք) քաղաքի մերձակայից հանվող սև սաթը (ըստ հնագետ Արամ Գևորգյանի սիրալիր խորհրդատվության, Հայաստանում, ինչպես և ողջ Մերձավոր Արևելքում, հնում տարածված է եղել միայն գիշերաքար-սաթը, իսկ «բրածո խեժ»-սաթը չի հանդիպում մինչև նոր ժամանակներ): Սաթը համարվել է թանկագին քար, իսկ էպոսներում հերոսուհիների անունները երբեմն կապված են

[41] Տե՛ս օրինակ Petrosyan A. Y. State Pantheon of Greater Armenia, p. 186-187:

[42] Պետրոսյան Ա. Հայկական և հյուսիսկովկասյան..., 39-40:

[43] Эпос о Гильгамеше (пер. И. М. Дьяконова), М.-Л., 1961, с. 77.

[44] Այդ մասին տե՛ս Պետրոսյան Ա. Արամազդ. կերպար, պաշտամունք, նախատիպեր, Երևան, 2006, էջ 53:

[45] Պետրոսյան Ա., Հայկական և հյուսիսկովկասյան..., էջ 44:

թանկագին քարերի հետ: Այսպես, անունը գեղեցկուհի Ագունդայի, որին են ձգտում կովկասյան հերոսները, նշանակում է «հակինթ», իսկ Փոքր Մհերի՝ «Սասնա ծռերում» Արտավազդի կրկնակի կնոջ անունն է Գոհար[46]: Հատկանշական է, որ Սոսլան/Սոսրուկոն, Սաթանա/Սաթանեյի որդին, որոշ տարբերակներում ծնվում է սև քարից[47], իսկ ադըղական ավանդույթում Սոսրուկոն հաճախ ուղղակի կոչվում է «սև տղամարդ»[48]: Մինչդեռ ավելի արխաիկ տարբերակներում, ինչպես ասվեց, Սաթանա/Սաթանեյն ինքն է հղիանում «նետ-սերմից»: Այսինքն, «սև քարն» այստեղ համապատասխանում է Սաթանա/Սաթանեյին, որին միանգամայն կպատշաճեր սև սաթի հետ կապված անունը:

Հայոց արքայի, նրա ալանուհի կնոջ և զնդանված հերոսի վերաբերյալ սյուժեն հայկական ավանդույթում ի հայտ է գալիս երկու անգամ: Տրդատ III մեծը (մ.թ. 287-330), որն ընդունեց քրիստոնեությունը որպես Հայաստանի պետական կրոն, իր կին Աշխենի և քրոջ՝ Խոսրովիդուխտի հետ սրբացվել է: Կա հաստատուն ավանդույթ, որ Աշխենն ալանական արքայադուստր է եղել[49] (բայց ամենահին և վավերական աղբյուրները՝ Ագաթանգեղոսն ու Խորենացին այդ մասին լռում են): Հայոց դարձի վիպական պատմության մեջ Տրդատ III-ը զնդանում է Գրիգոր Լուսավորչին խոր վիրապում: Քրիստոնյաների հալածանքի պատճառով Տրդատը վերածվում է խոզ/վարազի (Ագաթանգեղոս 212, 219, 727, 763, 773): Հետո նա ազատում է զնդանից Գրիգորին, որն իր աղոթքներով առողջացնում է նրան և վերադարձնում մարդկային կերպարանքը: Այս «եկեղեցական էպոսում» Գրիգոր Լուսավորիչը կրկնում է քարայրում փակված «մեռնող և վերածնվող» հերոսի կերպարը (Թամմուզ, Ադոնիս, Ատտիս ևն)[50]:

Տրդատի կնոջ Աշխեն անունը կապում են կամ պահլ. axšēn «գորշ, կապտավուն կամ կանաչավուն» (ավեստ. axšaēna «մուգ սև», հին պրսկ.

---

[46] Ագունդայի, հին սկյութան դիցուհու և Սաթենիկի՝ թանկարժեք քարերի հետ կապի մասին տե՛ս Dalalyan T. On the Character and Name..., p. 246-248. տե՛ս և Մարտիրոսյան Հ. Լեռնային ակունքի ֆառնը, արշալույսի դիցուհին և գլխի ու մորթու զոհածեսը վիշապակոթողների իմաստաբանական հենքում, Վիշապ քարակոթողները, Երևան, 2015, էջ 155:

[47] Ардзинба В. Г. Нартский сюжет..., с. 158-159.

[48] Кабардинский фольклор, с. 15, 23, 24, 29; 39, 199, 200, 215; Ардзинба В. Г. Нартский сюжет..., с. 158-159; Бербеков Х. Б. Уникальный тип эпического героя и цветовые коды в адыгском нартском эпосе. Современные наукоемкие технологии, 2005, 4. http://www.rae.ru/snt/pdf/2005/04/Berbekov.pdf.

[49] Չամչեանց Մ. Հայոց պատմություն, Վենետիկ, 1784, էջ 379; Աւգերեան Մ. Լիակատար վարք եւ վկայաբանութիւն Սրբոց, որք կան ի հին տօնացուցի եկեղեցւոյ Հայաստանեայց, Վենետիկ, 1810, էջ 379; Աճառյան Հ. ՀԱնԲ, հ. Ա, Երևան, 0942, էջ 430, աղբյուրներով; Габриелян Р. А. Алано-армянские отношения (I-X вв.). Ереван, 1989, с. 72:

[50] Այս մասին, համեմատական առասպելաբանության համատեքստում, տե՛ս Ադոնց Ն. Հին հայոց աշխարհայացքը, էջ 274; Петросян А. Е. Армянский эпос и мифология, с. 116-124; հայկական առասպելաբանության մեջ վարազի առասպելույթի իրանական կապերի մասին՝ Garsoïan N. The Iranian Substratum of the 'Agathangelos' Cycle. East of Byzantium: Syria and Armenia in the Formative Period. Washington DC, 1982, p. 151-174:

axšaina «կապտաստ քար, լազուրիտ») կամ ավեստ. xšōiθni «իշխանուհի» (> *xšēhn > xšēn), օս. æxsīn «տիկին» բառերի հետ[51]: Պետք է ավելացնել, որ օսերենում կա նաև սրանցից առաջինի հետ կապված æxsīn «մուգ գորշ» բառը[52]: Սաթանան հաճախ կոչվում է Ախսինա-աֆսինա (Æxsinæ-æfsinæ) «տիկին-տիրուհի», իսկ որոշ դիգորական տարբերակներում նա ուղղակի հանդես է գալիս Æxsinæ «տիրուհի» անունով[53]: Եթե Աշխենն իրոք եղել ալանուհի, նրա անունը կարող էր կապված լինել նշված օսական բառերի հետ[54]: Ընդհանրապես, մեծ դիցուհիները հաճախ կոչվում են «տիկին, տիրուհի», ինչպես աստվածները՝ «տեր» կոչումներով (հմմտ. «տեր աստված», «Անահիտ տիկին» և «Սաթենիկ տիկին»), իսկ Սաթանան հին դիցուհու վիպական ժառանգն է: «Տիրուհին» նաև ամենուրեք տարածված անձնանուն է (հմմտ. հայ Տիրուհին որպես անձնանուն)[55]: Մյուս կողմից, «մուգ, սև գույն» և «մուգ գույնի (թանկագին) քար» նշանակությունները համընկնում են Սաթենիկի անվան քննարկման ժամանակ բերված օրինակներին: Ըստ այդմ, կարելի է պակերացնել մի քանի հնարավորություն: Այսպես, Սաթենիկի պատմական նախատիպի անունը կամ կոչումը կարող էր լինել Æxsinæ «տիրուհի, տիկին», ինչը կարող էր իմաստավորվել նաև «մուգ գույնի թանկարժեք քար» իմաստով: Եվ հայերեն Սաթենիկն էլ կարող էր լինել այդ անվան երկրորդ իմաստավորման հայերեն թարգմանությունը: Հնարավոր է նաև, որ արքայադստեր ալանական անունը ի սկզբանե կապված է եղել «մուգ գույնի թանկարժեք քար» իմաստի հետ: Եվ սա կարող է լինել ալանական արքայադստեր անվան հայկական ծագման բացատրություններից մեկը:

Հայ առասպելաբանության համատեքստում Տրդատ III-ը և Աշխենը կրկնում են Վահագն և Աստղիկ աստվածային զույգի կերպարները: Տրդատը, որը կոչվում է քաջ, ինչպես Արտաշեսը և Վահագնը, լեգենդար ռազմիկ է, հսկա, շատ մրցությունների (այդ թվում՝ Օլիմպիական խաղերի) և ճակատամարտերի հաղթող (Ագաթանգեղոս 202. Խորենացի Բ.հթ, ծբ), ակնհայտորեն համադրելի է Վահագնի հետ: Դա հաստատվում է նաև այն բանով, որ Լուսավորչի մասին ասքում և «Վարք սրբոցում», նա, ի տարբերություն հայոց այլ սրբերի և հերոսների, հանդես է գալիս եռյակով՝

---

51 Hübschmann H. Armenische Grammatik, Leipzig, 1897, S. 20; Աճառյան Հ. ՀԱնԲ, հ. Ա, էջ 179:

52 ИЭСОЯ I, М.-Л. 1958, с. 110.

53 ИЭСОЯ I, с, 110-111, 220; Dalalyan T. On the Character and Name..., p. 244-246:

54 Налбандян Г. М. Армянские личные имена скифо-алано-осетинского происхождения, Вопросы иранской и общей филологии. Тбилиси, 1977, с. 212; Габриелян Р. А. Алано-армянские отношения, с. 72-73; Гутнов Ф. Х. Ранние аланы в закавказских источниках. Дарьял, 2002, 4. http://www.darial-online.ru/2002_4/gutnov.shtml; Դալալյան Տ. Դրվագներ հայ-ալանական դիցանվանական կապերից, էջ 50; Հ. Մարտիրոսյանը, որը պատրաստել է հայոց մեջ իրանական անունների կորպուսը, նույնպես այս անվան ալանական ծագումը համարում է հավանական (անձնական հաղորդում):

55 ՀԱնԲ Ե, էջ 169:

կնոջ և քրոջ հետ[56], այդպիսով, փաստորեն կրկնելով Վահագնի եռամաս տաճարում պաշտվող դիցաբանական եռյակը՝ Վահագն, Աստղիկ, Անահիտ (Ագաթանգեղոս 127): Վահագն անունը հանգում է հին իրանական աստծու պարթևական ժառանգին (< *Varhagn < պարթ. Varhragn < հին իրան. *Varθragna/*Vṛθragna, = ավեստ. Vərəθraγna)[57]: Ավեստայում Վըրըթրաղնայի մարմնավորումներից էր վարազը (Յաշտ XIV, 15): Ի միջի այլոց, խոզ/վարազի կերպարը հանդես է գալիս նաև Աստղիկի հիշյալ լեգենդում՝ նրա լոգանքի վայրը՝ Գուռգուռան գտնվում էր Տարոն նահանգում (Վահագնի պաշտամունքի կենտրոնում), Կնճան լեռներում, Խոզմո լեռան տակ[58] (*կինճ* «վարազ, խոզ» և *խոզ* բառերից):

Այսպիսով, ուրվագծվում են վարազի հետ կապված հեթանոսական աստծու և նրա զուգակցի՝ սիրո դիցուհու կերպարները, որոնք հիմք են դարձել խոզի վերածված թագավորի և ալանուհի թագուհու վիպական պատմության համար: Ակնհայտ է, որ Տրդատն ու Աշխենը կրկնում են «Վիպասանքի» հին հերոսների՝ Արտաշեսի ու Սաթենիկի կերպարները: Իրոք, վիպական Արտաշեսը, ինչպես ասվեց, Արտաշես և Տրդատ անուններով արքաների մի հավաքական կերպար է, ալանների պատմական արշավանքը տեղի է ունեցել Տրդատ I-ի ժամանակ, Տրդատ I-ի՝ ալանական ռազմիկի կողմից արկանման պատմությունը Խորենացու մոտ վերագրված է Տրդատ III-ին (ալաններին ազգակից բասիլների դեմ ճակատամարտի ժամանակ՝ Խորենացի Բ.ձե), Աշխեն անունը, համապատասխանում է Սաթանայի օսական մակդիրին և հավանաբար եղել է Սաթենիկի ալանական անունը կամ կոչումը, Տրդատի հերոսական արարքների մեջ հիշվում է նրա՝ Եփրատի անցումը ձիով, որը հիշեցնում է Արտաշեսի՝ Կուր գետի անցումը (Ագաթանգեղոս 202. Խորենացի Բ.hթ), Արտաշեսի և Տրդատի պատմություններում որպես խնամախոս հանդես են գալիս Սմբատ Բագրատունի կոչվող նույնանուն հերոսներ (Խորենացի Բ.ծ, ձզ): Այսպիսով, Տրդատ Մեծի և Աշխենի վեպը ձևավորվել է Արտաշեսի և Սաթենիկի վեպի հիման վրա:

Կապված չէ՞ր նաև նաև Արտաշեսի վիպական կերպարը վարազի հետ: Խորենացին, ինչպես ասվեց, էպոսից պատմականն առանձնացնելով, հնարավորինս ռացիոնալացնում է այն, երբեմն նույնիսկ չհիշելով չափազանց առասպելական հատվածները (այսպես, Արամ նահապետի սխրագործությունների վերաբերյալ գլուխը նա ավելացրել է միայն Սահակ Բագրատունու խնդրանքով): Բայց և այնպես, մնացել են այդ կապի հետքերը: Արտավազդը կործանվում է ըստ Արտաշեսի անեծքի, վարազների և վայրի էշերի որսի գնալիս (Խորենացի Բ.կա): Հենց այդպես, վարազի որսի ժամանակ են զոհվում տարածաշրջանի համապատասխան հերոսները՝

[56] Մաթևոսյան Ռ. Հայոց եկեղեցու սրբերը և սրբակենցաղ անձինք, Էջմիածին, 1999, էջ 65-68:

[57] ՀԱՆԲ Ե, էջ 8; Petrosyan A. State pantheon…, էջ 181:

[58] Սրվանձտյանց Գ. Երկեր, h. I, Երևան 1978, էջ 71-72; Հակոբյան Թ., Մելիք-Բախշյան Ս., Բարսեղյան Հ., Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, h. I, Երևան, 1986, էջ 979:

Ադոնիսը, Ատտիսը ևն (դա վարազը որպես սիմվոլ ունեցող աստծու կողմից որդուն պատժելու առասպելի տարբերակներից մեկն է)[59]: Ուրեմն, կարելի է կարծել, որ «Վիպասանքի» հին տարբերակներում Արտաշեսի և վարազի կապն ավելի վառ պետք է արտահայտվեր:

Իսկ ի՞նչ ունենք մենք Օսիայում: Սաթանայի ամուսնու Վըրըզմագ/Ուրուզմագ անունը, ինչպես ասվեց, ծագում է հայկական աղբյուրների Վարազմանից և կապված է իրանական *վարազ* բառի հետ: Հատկանշական է, որ մի դրվագում Ուրըմագն ուղղակի համեմատվում է վարազի հետ[60]: Ըստ այդմ, Ուրուզմագի՝ իր որդուն սպանելու մոտիվը կարող է մեկնաբանվել որպես վարազի կերպարով հայր աստծու կողմից որդուն սպանելու առասպելի արձագանք:

Այսպիսով, ուրվագծվում է հետևյալ պատկերը: Հայ Արշակունի արքաներից մեկը, հավանաբար, ամուսնացած է եղել ալանական արքայադստեր հետ, ինչն արտացոլվել է «Վիպասանքում» Արտաշեսի և Սաթենիկի պատմության ձևով: Ագաթանգեղոսը, որը գրում է Տրդատի և Աշխենի պատմությունը, ապրել է իր հերոսներից ընդամենը մեկ դար անց: Պատմական հիշողությունը դեռ թարմ է եղել և Տրդատի ու Աշխենի ասքի պատմության ստեղծողներն ու Ագաթանգեղոսն ինքը չէին կարող չափազանց ազատ լինել իրենց ստեղծագործության մեջ: Ըստ Խորենացու (Բ.ձգ), Տրդատը հրամայում է Աշխենին «գրել Արշակունի, ծիրանիներ հագցնել և թագ կապել, որպեսզի թագավորին հարսնանա»: Այսինքն, Աշխենը արքայական ծագում չուներ և Տրդատն արհեստականորեն է բարձրացնում նրա տոհմը: Ըստ այդմ, նա կարող էր լինել Հայաստանում հաստատված ալաններից (Հայաստանի ալանների մասին տե՛ս Խորենացի Բ.ծբ, ծը):

Հայկական և հյուսիսկովկասյան էպիկական ավանդություններում շատ բան ընդհանուր է՝ կերպարներ, մոտիվներ, հերոսների հաջորդականությունը[61]: Ոչ բոլոր ընդհանրություններն են բացատրվում փոխառությամբ, բայց և այնպես, փոխառություններ եղել են թե մեկ, թե մյուս կողմից: Դրանք տեղի են ունեցել ալանների արշավանքների և Հայաստանում հաստատվելու, ապա և հայերի՝ Կովկաս տեղափոխվելու արդյունքում: Ինչպես տեսանք, ընդհանուր անունների, կերպարների և մոտիվների քննությունը ցույց է տալիս, որ փոխառության հիմնական ուղղությունը եղել է հարավից հյուսիս (այնպես, ինչպես որ աշխարհի և

[59] Այսպես, Ադոնիսը սպանվում է որսի ժամանակ, վարազի տեսք ընդունած Արես աստծու կամ Արեսի ուղարկված վարազի կողմից (նույնը վերաբերվում է նաև Ատտիսին, տե՛ս և Петросян А. Е. Армянский эпос и мифология, с. 119-120). Կարելի է ասել, որ այս համատեքստում Արտաշեսը, Սաթենիկը և Արտավազդը, այնպես ինչպես և Տրդատը, Աշխենն ու Գրիգոր Լուսավորիչը համապատասխանում են Արեսին, Աֆրոդիտեին և Ադոնիսին:

[60] Dumézil G. Mythe et épopée, t. 1, Paris, 1968, p. 465.

[61] Պետրոսյան Ա. Հայ և հյուսիսկովկասյան...; Петросян А. Е. Некоторые армяно-западнокавказские эпические параллели; Его же: Структурные связи армянских и осетинского нартского эпосов:

տարածաշրջանի մշակութային զարգացումները Վրաստան և Կովկաս էին հասնում Հայաստանի վրայով)[62] և Սաթանա/Սաթանեյ անունը փոխառվել է հայկական ավանդույթից: Չնայած դրան, կովկասյան հերոսուհիների կերպարներում քիչ բան է հայկական՝ նրանք, իրենց բնութագրերի մեծամասնությամբ, տեղական դիցուհու կամ դիցուհիների վիպական տարբերակներ են: Ավելին, հայոց Սաթենիկն ալանուհի է, ինչը նշանակում է, որ նրա պատմության մեջ որոշակի ալանական տարր պիտի լիներ[63]: Դա միանգամայն բացատրելի է: Չէ՞ որ Հայաստանում Շամիրամի՝ Սաթենիկի վիպական նախորդի բանահյուսական կերպարում էլ, բացի անունից, քիչ բան է ասորեստանյան՝ նա հիմնականում հայ դիցուհու վիպականացած տարբերակն է:

* * *

Սաթ բառի ծագումն անհայտ է: Այդ բառը հայկական, օսական կամ հյուսիսկովկասյան չէ: Հնարավոր է, որ այն ունի խուռիական ծագում: Հյուսիսային Միջագետքի խուռիական Նուզի քաղաքի մ.թ.ա. II հազարամյակի աղբյուրներից հայտնի են šat- սեպագիր տարրով (կարդալ sat-՝ ասորեստանյան և խուռիական սեպագրում š-ով հաղորդվել է s հնչյունը) բազմաթիվ անուններ՝ šata, šaten-, šati, šatiya, šatim, šatu-, šatuya, šatuke, šatum-, šatuša, šatar, šaten, šatn-, šatt, šattu, šattuya, šatta[64], որոնց գոնե մի մասի իմաստն անհասկանալի է:

Խուռիական արիստոկրատիայի անունները նման են հին հնդկականներին, խուռիական աստվածների շարքում հիշվում են հին հնդկական աստվածներ: Դա բացատրվում մի հնդիրանական ցեղի՝ «միջագետքյան արիացիների» կամ «միտաննիական արիացիների» ազդեցությամբ, որոնք կազմել են խուռիական հասարակության վերին շերտը:

Հնդկական առասպելաբանության մեջ հայտնի է երկու հերոսուհի, որոնց կյանքում տեղի է ունենում հիշված «գետափնյա արկածը» հիշեցնող մի միջադեպ: Սատյավատի (Satyavati) անունով մի կին, ծնված ձկան տեսքով ջրահարսից, կապի մեջ է մտնում արքայի հետ գետափին, մառախուղի մեջ, որի հետևանքով ծնվում է Դվայպայանան («Սև կղզիածին», այլ անունով՝ Վյասա), որին բախտ է վիճակվում դառնալ «Մահաբհարատա» էպոսի հերոսների պապը և այդ էպոսի ստեղծողը («Մահաբհարատա» I, 57): Մեկ այլ Սատյավատի, Պարաշուրամա («Սև կացնավոր») հերոսի մայրն ականատես է լինում, թե ինչպես է արքան զվարճանում իր կնոջ հետ գետում, ինչի հետևանքով պատժվում է («Մահաբհարատա» III, 115-116): Այս Սատյավատիները, բացի անվան նմանությունից և «գետափնյա արկածից», ունեն այլ ընդհանրություններ

[62] Պետրոսյան Ա. Հայ և հյուսիսկովկասյան..., էջ 32-34:

[63] Ըստ Հրաչ Մարտիրոսյանի, Սաթենիկի սիրո տենչանքի մասին խրթին բանաստեղծության մեջ առկա են ալանական բառեր, տե՛ս Մարտիրոսյան Հ. «Արտախուր խավարտի» մեկնաբանության նոր փորձ, Պատմաբանասիրական հանդես, 1996, 1-2, էջ 311-316:

[64] Gelb I. J., Purves P. M., MacRae A. A. Nuzi Personal Names, Chicago, 1963, p. 126-127, 252.

Սաթենիկ/Սաթանայի հետ՝ օսական Սաթանայի մայրը, Ձերասսան, որը կարողանում էր ձուկ դառնալ, համադրելի է առաջին Սատյավատիի մոր հետ, գետի վրա տարածվող մառախուղը հիշեցնում է Աստղիկի ու Սաթանեյի լեգենդները, կովկասյան հերոսուհիների հետ համեմատելի է նաև հնդկական հերոսուհիների որդիների կապը սև գույնի հետ (հմմտ. «սև» Սոսրուկոյի կերպարը), իսկ առաջին Սատյավատիի հինգ թոռները և երկրորդի հինգ ծոռները համադրելի են Սաթենիկի հինգ որդիների հետ: Սատյավատի անունը հնդկերենում նշանակում է «ճշմարտացի»: Այն ծագում է *sn̥t-yo- դերբայական նախաձևից (արմատն է *es- «լինել»): Հավանական է թվում, որ հնագույն փոքրասիա-կովկասյան քարից ծնվող աստվածության առասպելույթը Մերձավոր արևելքում համադրվել է Սատյավատիի «միջագետյան արիական» առասպելի հետ: Վերջինիս անունն իմաստավորվել է տեղական *սաթ* բառով, իսկ նրա կերպարը բաղարկվել՝ խառնվել է Իշտարի, Աստարտեի և Աստղիկի հետ, որի ժառանգն է և հայոց Սաթենիկը[65]:

Կովկասյան էպոսների մեծ հերոս Սոսլան/Սասրուկոն ծնվում է բեղմնավորված քարից: Պատմությանը հայտնի ամենահին քարից ծնվող կերպարը խուռիական Ուլլիկումմին է (որը ծնվում է բեղմնավորված ժայռից)[66]: Ավելի ուշ շրջանից հայտնի են փոքրասիական համանման առասպելներ Ագդիս/Ագդիստիսի մասին[67]:

Խուռիերենը և նրան ազգակից ուրարտերենը, ինչպես և Փոքր Ասիայի բնակիչների հին լեզուն՝ խաթերենը, հաճախ համարում են ազգակից հյուսիսկովկասյան լեզուներին[68]: Հնարավոր է, որ քարից ծնվող հերոսի կերպարը սկզբնապես բնորոշ է եղել այդ լեզուների կրողների առասպելաբանությանը: Այդպիսով, խուռիական և փոքրասիական հին առասպելները կարող են ծագումնաբանորեն նույնական լինել կովկասյանների հետ: Իսկ Սաթանա/Սաթանեյի առասպելը կարելի է դիտել որպես երկու՝ հնդեվրոպական և հյուսիսկովկասյան ավանդույթների համադրման արդյունք:

---

[65] Պետրոսյան Ա. Արամի առասպելը..., էջ 110-116:

[66] Hoffner H. A. Hittite Myths. Atlanta, 1990, p. 52-60.

[67] Եվ հատկանշական է, որ Ագդիստիս-Կյուբելեի սիմվոլն էր մի սև քար, որը մ.թ.ա. 204 թ. տեղափոխվեց Հռոմ, տե՛ս Ирмшер Й. Словарь античности, М., 1989, с. 260: Այս առասպելների վերաբերյալ, կովկասյան հերոսների առնչությամբ, տե՛ս Ардзинба В. Г. Нартский сюжет...՝ Петросян А. Е. Армянский Мхер, западный Митра и урартский Халди:

[68] Дьяконов И. М., Старостин, С. А. Хуррито-урартские и восточнокавказские языки. Древний Восток: этнокультурные связи. М., 1988, с. 164-207; Иванов Вяч. Вс. Об отношении хаттского языка к северо-западнокавказским, Древняя Анатолия. М., 1985, с. 26-59; հմմտ. Kassian A. Hattic as a Sino-Caucasian language, Ugarit-Forschungen. Internationales Jahrbuch für die Altertumskunde Syrien-Palästinas. Bd 41, 2010, p. 309–447; Idem, Hurro-Urartian from the lexicostatistical viewpoint. Ugarit-Forschungen. Internationales Jahrbuch für die Altertumskunde Syrien-Palästinas. Bd 42, 2011, p. 383–451.

Ասվածի հիման վրա ուրվագծվում են պատմական վերակազմության որոշ հնարավորություններ։ Խուսափելով միարժեք լուծումներից, կարելի է ասել, որ Սաթենիկի առասպելը մեզանում, հավանաբար, ունի շատ հին արմատներ։ Այն անցել է Արտաշեսի վեպին, որը, իր հերթին, յուրացրել է Տրդատ I-ի դարաշրջանի ալանական արշավանքի որոշ տարրեր, ապա և հիմք ծառայել Տրդատ III-ի և Աշխենի վեպի համար։ Հայկական այս վեպն ալանների արշավանքներից հետո անցել է Կովկաս և էական դեր կատարել տեղի նարթական էպոսների ձևավորման գործում։

Ինչպես գրում է Վ. Ի. Աբաևը, օսական նարթական էպոսի փաստորեն բոլոր գլխավոր հերոսների անունները բնիկ օսական չեն, իսկ Ուրուզմագի անունը, լինելով ծագումով իրանական, անցել է Օսիա «հայ-աղվանական միջնորդությամբ» (Վարազման անունն ավանդված է միայն Կաղանկատվացու «Աղվանից աշխարհի պատմության» մեջ)։ Ինչպես տեսանք, կովկասյան էպոսների կարևոր անունների մի շարք նույնպես ծագում են Հայաստանից, և Աբաևը կանխադրում էր հայ-ալանական «Վարազման-Սաթենիկ» վեպի գոյությունը որպես հիմք օսական (ապա և ադըղական ու բալկարական) էպոսի համապատասխան մասի համար։ Այս լույսի ներքո պետք է նշել, որ ըստ Հովան Սիմոնյանի գենետիկական ուսումնասիրության, Արցախի Հասան-Ջալալյանները ծագում են Բագրատունիներից, և նույն ծագումն ունեն իրենց հայոց թագավորներից սերված համարող օսական տոհմերը (այդ թվում և Հյուսիսային Օսիա-Ալանիա Հանրապետության ներկայիս նախագահի Թեյմուրազ Մամսուրովը)[69]։ Ըստ այդմ, չի բացառվում օսական էպոսի հայկական տարրերի գոնե մի մասի ծագումը Հայաստանի արևելյան այս շրջանից, թերևս «Արտաշես և Սաթենիկ» արքայական վեպի մի տեղական տարբերակից։ Մյուս կողմից, Հայկական լեռնաշխարհում արդեն ուրարտական ժամակաշրջանում հաստատված են եղել ալանների լեզվական ազգակիցները՝ սկյութները[70], և այս հայ-օսական ընդհանրությունների գոնե մի մասը կարող էին սկզբնավորվել արդեն հնագույն ժամանակներում, գուցե և նույն տարածքներում։

## АРМЯНСКАЯ САТЕНИК И ЕЕ КАВКАЗСКИЕ ПАРАЛЛЕЛИ

ПЕТРОСЯН А.Е.

[69] https://www.youtube.com/watch?reload=9&v=etBNo638Pw&feature=youtu.be.

[70] Տե՛ս օրինակ Հայաստանի հարակից երկրների պատմություն, Երևան, 2013, էջ 432։

Резюме

В кавказских эпосах прослеживается влияние армянской мифологии и эпоса: например, образы кадзей, Артавиза и Аргвана в осетинской и западнокавказской традициях имеют армянские прототипы. Имя Сатана/ Сатаней не этимологизируется на основе осетинского или кавказского языков и не имеет принятой этимологии. Между тем, Сатеник/Сатиник имеет прозрачную армянскую этимологию и образовано от корня сит "гагат, янтарь", с суффиксом -eni(k), ср. аналогичные женские имена Назиник, Арпеник и Варсеник (Р. Ачарян, Т. Далалян). Таким образом, имя Сатана/ Сатаней, равно как и ряд имен в кавказских эпосах, восходит к армянской традиции.